կը պահանջէ,— հանրօգուտ շինութիւններ, վերաբաշխում վարկի, ազգայնացում ճարտարարուեստական կազմակերպութեանց : Կա՛մ մեզի հետ, կա՛մ մեզի դէմ : Երկրին ստուար մեծամասնութիւնը մեր կողմը պիտի ըլլայ » :

Համագումարին կը մասնակցէին 500 պատգամաւորներ, որոնք կը ներկայացնէին 300 սէնտիքաներ, 100.000 անդամներով : Ժողովը զբաղեցաւ նաեւ Սպանիոյ հանրապետականներուն օգնելու հարցով, 40 ժամուան աշխատանքի օրէնքին ամբողջական գործադրութեամբ եւ աշխատավարձքերու յաւելումով :

## Արհեստակցական միութեանց միացման խնդիրը

Ցառաջիկայ շաբթու շատ կարեւոր ժողով մը պիտի գումարուի Օսլոյի մէջ, քննելու համար արհեստակցական կազմակերպութեանց միացման խնդիրը : Խ. Միութենէն դուրս, 22 երկիրներ կը մասնակցին Արհեստակցական միութեանց, 20 միլիոն անդամներով : Վերջերս բանակցութիւններ կատարուեցան Մոսկուայի հետ, արհեստակցական շարժման երկու թեւերը միացնելու համար, բայց շատ մը երկիրներ հակառակ են այդ միացման, այնպէս որ բազմաթիւ դժուարութիւններ կը ներկայանան, ծրագրին գործադրութեան համար : Մոսկուա այնպիսի պայմաններ առաջարկած է որ անընդունելի կը համարուին : Մասնաւորապէս հակառակ են Անգլիոյ եւ ուրիշ երկիրներու արհեստակցական միութիւնները : Մ. Նահանգներու Աշխատանքի Դաշնակցութիւնը եւ Զուիցերիոյ կազմակերպութիւնը յայտարարեցին թէ պիտի հեռանան ժողովէն, եթէ Ռուսերը ներս մտնեն, նոյնիսկ իրենց պայմանները ետ առնելէ վերջ : Զուիցերիացիները կ՚ըսեն թէ ռուսական կազմակերպութիւնները անկախ միութիւններ չեն, հետեւաբար չեն կրնար ազատ որոշումներ տալ : «Անոնք պետական կազմակերպութիւններ են, ինչպէս Իտալիոյ եւ Գերմանիոյ մէջ » :

Հակառակ են նաեւ Պելժիոյ, Հոլանտայի, Չեխոսլովաքիոյ, Շուէտի, Տանըմարքայի եւ Ֆինլանտայի կազմակերպութիւնները : Իսկ Խ. Միութեան ուժ պիտի տան Ֆրանսա, Նորվեկիա, Սպանիա, Մեքսիկա եւ թերեւս ուրիշներ ալ :

Մոսկուա հետեւեալ պայմանները դրած է միացման համար.— Արտակարգ համագումար մը հրաւիրել, միացեալ ճակատի խնդիրը քննելու համար.— Ընտրել երեք նախագահներ, որոնց մէկը Ռուս պէտք է ըլլայ.— Ռուսական ընդհ. քարտուղարութիւն մը հաստատել.— Երաշխաւորել թէ արհեստակցական միութեանց Դաշնակցութեան դրամները պիտի չգործածուին պայքար մղելու Խ. Միութեան դէմ.— Եւ շարք մը քաղաքական պայմաններ, օրինակ՝ բանուորական տնօրինութիւններ Գերմանիոյ, Իտալիոյ եւ Ճափոնի դէմ :

Զաւեշտ տարբեր այս առթիւ դիտել կուտան թէ հիմնական սխալը գործուեցաւ 1936ին, երբ որոշեցին բանակցիլ Մոսկուայի հետ :

## Ողողում Արեւելեան Նահանգներու մէջ

Թուրքերէն թերթերը կը գրեն թէ Արեւելեան նահանգներու մէջ, ձիւնհալի եւ անընդհատ տեղացող անձրեւներու հետեւանքով գետեր յորդած, կամուրջներ քշուած եւ ողողումներ տեղի ունեցած են :

Երզնկայէն հասած նոր տեղեկութեանց համաձայն, Եփրատի յորդումը կատաղի վիճակ մը ստացած է եւ 20ի մօտ գիւղեր ողողուած են : Հազարաւոր գիւղացիներ ողողումի վտանգէն փրկուելու համար, լեռները կ՚ապաստանին : Անձրեւը կը շարունակուի : Շրջակայ բոլոր գիւղերը պարպուած են : Երզնկայի կեդրոնէն մասնաւոր մարմիններ ողողուած շրջանը գացած են : Նիւթական վնասները կը ճշդուին : Բոլոր հունձքերը փճացած են : Դեռ մարդկային կորուստ չէ արձանագրուած : Մեծ թիւով անասուններ անհետացած են : Ողողուած գիւղերու մէջ կարգ մը տուներ քանդուած են

### ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ պետական հրատարակչականի վիպական ճիւղին տնօրէնը՝ Խարքունով, պիտի դատուի մօտերս, ամբաստանուած ըլլալով թէ մեծ գումարներ վճարած է զանազան հեղինակներու, որոնք խոստացած էին գիրքեր գրել, բայց չեն գրած : Այսպէս, 1.500.000 րուբլի վատնած է զանազան «հրատարակութեանց» համար որոնք երբեք լոյս չեն տեսած : Միեւնոյն ատեն մեծ գումարներ ստացած է հեղինակներէն, իբրեւ կաշառք : Առ հասարակ լաւ կը վճարուին խորհրդային գրողները : Այսպէս, կ՚ըսուի թէ Ալէքսիս Թոլսթոյ աւելի քան 100.000 րուբլի կը ստանայ ամէն ամիս : «Փրավտա » 1936ին ցանկ մը հրատարակեց, որուն համաձայն վիպագիր մը, Լէոնիդ Լէոնով, տարեկան 100.000 րուբլի շահած է երեք տարուան ընթացքին : Սերաֆիմովիչ, դատապարտուած դեսպան Սոքոլնիքովի կինը, 115.000 րուբլի շահած է 1935ին, իբրեւ գրող : Ուրիշ կարգ մը հեղինակներ տարեկան 50.000 — 100.000 րուբլի ստացած են :

ԱՆԳՐԱՏԼԱՆՏԵԱՆ ՇՈԳԵՆԱՒԵՐՈՒ ԳՈՐԾԱԴՈՒԼԸ վերջացնելու համար, ազդու միջոցներ ձեռք առաւ կառավարութիւնը : Բոլոր նաւերուն (մէջն ըլլալով «Նորմանտի»ին) պաշտօնեաները բանաձեւ մը քուէարկեցին, որով կը պահանջեն վերահաստատել արձակուած պաշտօնեաները :

1790ին ԸՆԿՂՄԱԾ (148 տարի առաջ) նաւ մը ջուրին երեսը հանելու համար կառավարութիւնը աճուրդ մը կազմակերպեց : Տեղական թերթերը կը գրեն թէ այս նաւը, «Տելեմաք», բազմաթիւ գոհարեղէններ եւ դրամներ կը պարունակէ, 85 միլիոն ոսկի ֆրանք արժողութեամբ :

ՉԵԽԱԿԱՆ կառավարութիւնը արտակարգ նիստ մը գումարեց երէկ, քննելու համար երկրին կացութիւնը, մանաւանդ որ Անգլիա եւ Ֆրանսա բարեկամական թելադրութիւններ ըրած են թէ Չեխոսլովաքիոյ եւ թէ Գերմանիոյ : Կառավարութիւնը մինչեւ 1940 ապրիլ 15 արգիլեց Վիէննայի վեց կարեւոր օրաթերթերուն մուտքը :

ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆԸ պաշտօնական զեկոյցով մը կը հրաւիրէ բոլոր այն օտարականները որ Ֆրանսա եկած են 1938 մարտ 14էն ի վեր, Կեդր. Եւրոպայի երկիրներէն, որպէսզի ներկայանան եւ կանոնաւորեն իրենց թուղթերը, այլապէս պիտի պատժուին :

ԱՆԳԼԻՈՅ թագաւորը օդանաւ նստելով, աչքէ անցուց երկրին օդանաւային գլխաւոր կայանները :

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ ծանր ճարտարարուեստի գործավարը, Քականովիչ, զեկոյցով մը կը հաստատէ թէ 1937ի քիմիական ամբողջ ծրագիրը ձախողած է, իբրեւ հետեւանք լրտեսներու եւ հակայեղափոխականներու մեքենայութեանց :





## Հ. Յ. Դ.

Դաւառ

ԼԻՈՆԻ ՇՐՋ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 12 Մայիս, Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին, «Քաֆէ Լէթուալ»ի վերնայարկը, 1 քուր կամպէթթա։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՎԱԼԱՆՍԻ կոմիտէի ընդհ. ժողովը 13 Մայիս, Ուրբաթ երեկոյ ժամը 8ին, Հ. Յ. Դ. «Սիամանթօ» ակումբին մէջ։



### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Հ. Կապոյտ Խաչի Անկէնի Մասնաճիւղի Ընդհ. Ժողովը 11 Մայիս, Չորեքշաբթի գիշեր ժամը ճիշդ 9ին, ծանօթ հաւաքատեղին : Խիստ կարեւոր օրակարգ : Անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է : Միասին բերել անդամատետրերը :




Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Dassesse — PARIS (13)

## Ընտրութիւնները կատարուեցան խաղաղութեամբ

Կիրակի օր տեղի ունեցան քաղաքապետական ընտրութիւնները, 256 շըրջաններու մէջ, որոնց 56ը գերմանական են: Սակայն քուէարկութիւնը կատարուեցաւ միայն 179 շրջանակներու մէջ: 77 շրջանակներ իրենց թեկնածուները վերահաստատեցին առանց ընդդիմութեան: Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, Հէնլայնի կուսակիցները (հիթլէրական) շահած են 80 առ հարիւր, ի վնաս չափաւոր եւ պահպանողական հոսանքներու: Համայնավարները եւ ազգայնական Չեխերը, որոնք հակառակ էին որեւէ գիջումի, կարեւոր բան մը չշահեցան: Ընտրութեանց առթիւ նորութիւն մը եղաւ հրէական անջատ կուսակցութեան մը երեւումը, իրեն յատուկ թեկնածուներով:

Ընտրութիւնները պիտի լրանան յառաջիկայ կիրակի օր: Այնպէս որ, կացութիւնը մեղմացած է առայժմ: Չեխոսլովաքիոյ վարչապետը նոր հրաւէր մը ուղղեց Հէնլայնի կուսակցութեան, բանակցելու համար, բայց այս վերջինը նորէն մերժեց, «մինչեւ որ եա առնուին զինուորական ապօրէն տնօրինութիւնները»:

## Գերմանական մամուլին սպառնալիքները

Պաշտօնական Գերմանիան վերապահ դիրք մը բռնած է, առ այժմ: Արտաքին նախարարը Միւնիխ գնաց, Հիթլէրի հետ խորհրդակցելու համար: Գերմանական թերթերը կը շարունակեն սպառնալիքներ ուղղել Չեխոսլովաքիոյ եւ անոր բարեկամներուն: Անոնց ընդհանուր կարծիքն այն է թէ «չեխական կառավարութիւնը այլեւս տէր չէ կացութեան»: Այս առթիւ շնդալից խորագիրներ կ'երեւան.— «Փրակայի զարհուրելի արինահեղութիւնը: Չեխերը վայրագօրէն կը սպաննեն երկու Գերմանացիներ»:— «Չեխական զօրքը գործեց այս ոճիրը: Հետեւաբար, չեխական կառավարութիւնը ուղղակի պատասխանատու է երկու Գերմաններու մահուան»:— «Ասիկա կազմակերպուած մարդորսութիւն մըն է Գերմանացիներու դէմ: Ո՞վ արձակեց հրամանը»:— «Չեխական կառավարութիւնը ամէն միջոց կը գործադրէ բոլորովին անպաշտպան Գերմաններուն դէմ: Երկաթ, փոխանակ բանականութեան»:— «Վայրկեանը շատ ծանր է: Չեխական կառավարութիւնը վիթխարի պատասխանատուութեան մը տակ կ'իյնայ» Միեւնոյն ատեն գերմանական թերթերը յարձակելով Ֆրանսայի վրայ, կը քննադատեն անգլիական կառավարութիւնը, ըսելով թէ կացութիւնը կը խեղաթիւրէ եւ նոր սուտ մը կը հնարէ պատասխանատուութեանց մասին»:

*** Իտալիոյ մէջ ուշադրութեամբ կը հետեւին չեխական դէպքերուն, յուսալով թէ կարելի պիտի ըլլայ խաղաղութեամբ լուծել հարցը:

## "Այլեւս չենք կրնար համբերել"...

Ինչպէս գրած էինք, Թուրքիոյ վարչապետը Սանճաքի հարցի մասին բացատրութիւններ տուաւ Ազգի խորհրդարանական խմբակցութեան առջեւ: Վարչապետը յայտարարեց թէ պարտականութիւն մը կը նկատէ կուսակցութեան տեղեկացնել թէ բազմաթիւ ոտնձգութիւններ կը կատարուին, Թուրքերուն միջեւ երկպառակութիւն սերմանելու համար. առհասարակ բոլոր Թրքաստրներուն հանդէպ ապօրինի վերաբերում մը ցոյց տալով: Հոգատար վարչութեան գիտակցութեամբ կամ թոյլտուութեամբ, շարունակուող ընտրութիւնները իրենց ակիզբին մէջ իսկ դադրեցնելու եւ Թուրքերուն ի նպաստ ամէն կողմ յայտնուած համակրական ցոյցերը արգիլելու համար ուժի, բռնութեան եւ սուիններու սպառնալիքին կը դիմուի: Այսուհանդերձ վարչապետը յանձնարարեց դէպքերուն առանալիք վիճակին սպասել պաղարիւնութեամբ, ինչ որ իրենց իրաւունքին վրայ վստահ մարդոց յատկանիշն է, եւ բացատրեց թէ ներկայ կացութեան պահանջած միջոցները ձեռք կ'առնուին արդէն, եւ թէ անոնց կարգին լուրջ դիմումներ կատարուած են:

Այս առթիւ շատ մը ժողովականներ խօսք առնելով, դառն եւ զանգատալից յայտարարութիւններ ըրին «Թուրքիոյ հաշտ ապրելու փափաքը չարաչար գործածող» հոգատար վարչութեան դէմ: Ճառախօսներէն Ռասիհ Քափլան ըսաւ թէ «այլեւս չենք կրնար պարզ հանդիսատեսներ մնալ ամէն օր մեր եղբայրներուն կրած նորանոր չարչարանքներուն: Անոնց տուները կը մտնեն, զանոնք կը ծեծեն, կը նախատեն եւ կը վիրաւորեն»: Ճառախօսը յայտարարեց թէ ուրիշ կերպ վարուելու է անոնց դէմ, որոնք չեն ուզեր ըմբռնել իրաւունքն ու բարեկամութիւնը, եւ պահանջեց որ կառավարութիւնը աւելի կորովով գործէ ու հաւատ չընծայէ իրենց խօսքը չյարգող Ֆրանսացի գաղթային գործակալներուն:

### ՃԱՆԱՃԱՆԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՈՒՐՔԻՈՅ ազգ. մեծ ժողովը մայիս 21ին առխողաբար քուէարկեց օրինագիծ մը, որով կառավարութեան արտօնութեան կը տրուի մինչեւ 125ուկէս միլիոն թրքական ոսկիի գումար մը ճարել տասը տարուան ընթացքին, ազգ. պաշտպանութեան համար:

ԻՏԱԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԸ Ափրիկեան Տրիպոլիս գնաց, ուր մեծ ռազմափորձեր պիտի կատարուին այս օրերս: Հանդիսութեանց կը մասնակցի պատուիրակութիւն մը՝ Թունուզի իտալական գաղութէն:

600.000 ՃԱՓՈՆՑԻՆԵՐ (7 բանակ), յարձակողականի ձեռնարկեցին 1500 մղոն ճակատի մը վրայ, հարաւային Չինաստանի մէջ: Կռիւները կը շարունակուին կատաղօրէն:

ՊՈՒԼՂԱՐԻՈՅ Թագաւորը կիրակի օր բացաւ խորհրդարանը, որ փակուած էր չորս տարիէ ի վեր (1934 մայիս 19):

ՄԵՔՍԻԿԱՅԻ նախագահին դէմ ապստամբութիւն մը սարքուեցաւ, հրամանատարութեամբ Զօր. Սէտիլլոյի: Ապստամբները բազմաթիւ ըլլալով, կը կարծուի թէ պատերազմը երկար պիտի տեւէ: Կարծողներ կան թէ ապստամբ հրամանատարը կը քաջալերուի քարիւղի անգլիական եւ ամերիկեան ընկերութիւններէն, որոնց գոյքերը գրաւած է կառավարութիւնը:

ԵՐԿՈՒ ՏՂԱՔ, 15 եւ 17 տարեկան, վիճակահանութեան կեղծ տոմսակներ կը շինէին Կրընոպլի շրջանին մէջ: Երկուքն ալ ձերբակալուելով, խոստովանեցան թէ 500 տոմսակ ծախել տուած էին եւ հարիւրի չափ ծախած՝ հատը երկու փրանքի:

ՎԻԷՆՆԱՅԻ մէջ անընդհատ կը շարունակուին Հրեաներու ձերբակալութիւնները: Պատէնի ջերմուկներու վարչութիւնը արգիլեց բնակարաններ վարձու տալ Հրեաներու:

ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ հարիւրամեակը պիտի տօնուի մայիսի վերջերը: (Ընկերութիւնը հիմնուած է 1838 յունիս 1ին):

ՕՏԱՐԱԿԱՆՆԵՐՈՒ պաշտպանութեան համար հրապարակային ժողով մը գումարուեցաւ երէկ, երկուշաբթի, Միւթիւալիթէի մեծ սրահին մէջ: Այս առթիւ ճառեր խօսեցան զանազան հոսանքներու ներկայացուցիչները:

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ կառավարութիւնը ետ կանչեց չինական բանակին մէջ ծառայող բոլոր սպաները եւ խորհրդականները: Միեւնոյն ատեն պիտի դադրեցնէ ռազմանիւթի հայթայթումը:

ԻՏԱԼԻՈՅ նոր մարդահամարին համաձայն, բնակչութեան թիւը բարձրացած է 43.691.000ի:

ԻՖՍԻ-ԱՆ-ՓՐՈՎԱՆՍԻ մէջ երկու ինքնաշարժներ իրարու զարնուելով, երեք ուղեւորներ ածխացան, ուրիշ երեք հոգի ալ ծանրապէս վիրաւորուեցան:




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13) A. DER (AGOPIAN)




## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՎՐԻՊԱԿ.— Բժ. Վ. Թորգոմեանի այսօրուան յօդուածին մէջ (Գ. էջ), Հայկազեան երկհատոր բառարանի տպագրութեան թուական նշանակուած է 1836: Պէտք է ըլլայ Ա. հատորին: (Բ ը տպուած է 1837ին):

